Հ Ս Խ Հ   Լ Ո Ւ Ս Ժ Ո Ղ Կ Ո Մ Ա Տ

Պրոֆ. ՀԱԿՈԲ ՄԱՆԱՆԴՅԱՆ

# ԵՐԱՏՈՍԹԵՆԵՍԻ ՍՏԱԴԻՈՆԸ
ՅԵՎ
# ՊԱՐՍԻՑ ԱՍՊԱՐԵԶԸ

**Prof. Dr. AGOP MANANDIAN**

# DAS ERATOSTHENISCHE STADION
UND
# DER PERSISCHE ASPARÊZ

---

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅՈՒՆ ՄԵԼՔՈՆՅԱՆ ՖՈՆԴԻ

ՅԵՐԵՎԱՆ 1934

ՀԱՅԿ. ԼՈՒՍԺՈՂԿՈՄԱՏ

Պրոֆ. ՀԱԿՈԲ ՄԱՆԱՆԴՅԱՆ



# ԵՐԱՏՈՍԹԵՆԵՍԻ ՍՏԱԴԻՈՆԸ
# ԵՎ
# ՊԱՐՍԻՑ ԱՍՊԱՐԵՍԸ

Prof. Dr. AGOP MANANDIAN

# DAS ERATOSTHENISCHE STADION
# UND
# DER PERSISCHE ASPARÊZ



ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅՈՒՆ ՄԵԼՔՈՆՅԱՆ ՖՈՆԴԻ
ԵՐԵՎԱՆ 1934

# ԵՐԱՏՈՍԹԵՆԵՍԻ ՍՏԱԴԻՈՆԸ ՅԵՎ ՊԱՐՍԻՑ ԱՍՊԱՐԵՍԸ

## 1

Չափագիտական իմ աշխատության մեջ («Կշիռները և չափերը հնագույն հայ աղբյուրներում», Յերևան 1930) մատնացույց եր արված, վոր Խորենացու «Աշխարհացոյց»-ի համառոտ ու ընդարձակ խմբագրությունների մեջ, ինչպես և Անանիա Շիրակացուն վերագրված «Յաղագս ընթացից արեգական և համարոյ չափուց» հատվածում, հիշված են յերկու տարբեր ասպարեսներ՝ մեկն — «ըստ օդաչափութեան», իսկ մյուսը — «գետնաչափութեամբ»։ Հայկական այս աղբյուրների վկայությունները, վոր ուշադրության չեյին առնվել գիտական նախորդ աշխատություններում, չափազանց կարևոր են, վորովհետև ասպարեսն «ըստ օդաչափութեան», ինչպես յենթադրել եյի վերոհիշյալ իմ ուսումնասիրության մեջ, այն աշխարհագրական ստադիոնն է, վորով հույն աշխարհագրագետները չափել եյին յերկրի շրջապատը և աշխարհագրական աստիճանները։ Այդ չափումները, ինչպես հայտնի յե, կատարել եր գիտական մեծ հմտությամբ Աղեքսանդրիայի հռչակավոր գրադարանապետ Երատոսթենեսը (275—195 թ. նախ ք. Քր.), վորը համարվում է հիմնադիր մաթեմատիկական աշխարհագրության։ Այնուհետև նրա ընդգծած ուղղությամբ շարունակել են աշխատել նաև Հիպպարքոսը, Պոսեյդոնիոսը, Մարինոսը, Պտոլեմեոսը և ուրիշները։

Հիշյալ չափումների հիմք ծառայող աշխարհագրական ստադիոնների յերկարությունները, ինչպես հայտնի յե, մինչև այժմ վեճի առարկա յեն անգամ նորագույն ուսումնասիրություններում։ Երատոսթենեսի, օրինակ, ստադիոնը յեվրո-

պական գիտնականները յենթադրել են վերջերս 148 մետրից մինչև 186 մետր։ Ռ. Վիդեբանտը նրա յերկարությունը համարում է 157,5 կամ 159,8 մետր (տես Klio, XIV, եջ 207—256 և XVI, եջ 94—108), Կ. Լեման-Հաուպտը՝ հռոմեական մղոնի $^{1}/_{10}$ մասը, այսինքն՝ 148,825 մետր (տես Paulys Real-Encyklopädie der classischen Altertumswissenschaft, Neue Bearbeitung, 2 Reihe, 6. Halbband, եջ 1930—1963), իսկ Պ. Շնաբելը՝ հռոմեական մղոնի $^{3}/_{25}$ կամ $^{1}/_{8}$ մասը, այսինքն՝ 178,6 կամ 186 մետր (տես Sitzungsberichte der Preussischen Akademie der Wissenschaften, phil-hist. Klasse, 1930, XVI, եջ 17)։[1]

Թե ինչ խոշոր նշանակություն ունի աշխարհագրական այդ ստադիոնի վորոշումը յերկրագիտության պատմության համար՝ այդ ինքն ըստ ինքյան հասկանալի յե։ Երատոսթենեսի ստադիոնի ճշտմամբ վոչ միայն կըվորոշվի այժմյան մետրերով նրա հաշիվը յերկրի շրջապատի մասին, այլ և հնարավոր կըլինի լուծել չափագիտական այն մութ խնդիրները, վոր կապ ունեն նրա ստադիոնի հետ։ Յեթե ուղիղ համարվի, որինակ, Վիդեբանտի կարծիքն Երատոսթենեսի ստադիոնի մեծության մասին՝ յերկրի շրջապատի յերկարությունը, վոր Երատոսթենեսը յենթադրել եր 252.000 ստադիոն, կըստացվի 252.000×157,5 [կամ 159,8] = 39.690 կիլ. [կամ 40.269.600 մետր]։ Իսկ այս հաշվից պարզ կըլինի դարձյալ, վոր անգամ յերկրորդ դարում Քրիստոսից առաջ Երատոսթենեսը ճիշտ է համեմատաբար վորոշել յերկրի շրջապատը, վորի յերկարությունը յենթադրվում է այժմ մոտ 40.000 կիլոմետր։

Արդ՝ խիստ հետաքրքիր է ու ուշագրավ, վոր հայկական աղբյուրների տեղեկություններն աշխարհագրական ստադիոնի մասին վերաբերվում են, ինչպես ցույց է տրված վերո-

---

[1] Հիշատակված հետազոտությունները, դժբախտաբար, չկան Յերեվանում։ Երատոսթենեսի ստադիոնի մասին վերոհիշյալ տվյալները մեջ են բերված Հանս ֆոն Մժիկի ուսումնասիրությունից, վոր տպված է «Հանդէս Ամսօրեայ»-ում, 1933, Թ. 3—6, եջ 289—290։

հիշյալ իմ աշխատության մեջ, հենց Երատոսթենեսի ստադիոնին։

Քննության առնելով այդ վկայությունները և մեջ բերելով համապատասխան իմ հաշիվներն առանձին աղյուսակի մեջ՝ ես առանձնապես կարևոր ու հին եմ համարել յերրորդ հաշիվը, վորի համաձայն Երատոսթենեսի ստադիոնի յերկարությունը ստացվել էր ճշտիվ 159,8 մետր։ Այդ հաշիվը չի ընդունում սակայն Վիեննայի համալսարանի պրոֆեսոր Հանս ֆոն Մժիկը, վորը նորերս նույն այս խնդրի մասին ընդարձակ մի ուսումնասիրություն է հրատարակել «Հանդես Ամսօրեայ»-ում։[1] Մերժելով իմ հաշիվը՝ Հանս ֆոն Մժիկը տալիս է ինքը մի ուրիշ հաշիվ, հիմք ընդունելով վո՛չ թե «Աշխարհացույց»-ը, այլ «Ցաղագս ընթացից արեգական» հատվածը։ Այս նոր հաշիվը, թեև հետաքրքիր է և ուշագրավ, սակայն, ինչպես կըտեսնենք, չի կարող խախտել վո՛չ իմ լուծումը, վո՛չ էլ նրա թվական տարբեր նախադրյալները։ Մենք ցույց կըտանք ներքև, վոր «Աշխարհացույց»-ի վկայությունների նախորդ իմ լուծումը հաստատվում է այժմ նոր տվյալներով, վորոնք կարող են յելակետ ծառայել կարևոր ընդհանրացումների ու նպաստել չափագիտական նոր խնդիրների լուսաբանության, վոր վերաբերվում են պարսկական ու արևելյան չափերին։

Հույս ունեմ, վոր պրոֆ. Մժիկը, ուշադրության առնելով հայկական ու ոտար աղբյուրների ներքև մատնանշված ցուցումները, ինքը ևս կըհամոզվի, վոր իր կասկածներն «Աշխարհացույց»-ի վկայությունների նկատմամբ կարոտ են հիմնական վերաքննության։

---

[1] „Erdmessung, Grad, Meile und Stadion nach den altarmenischen Quellen" (Ein Beitrag zur Geschichte der Erdkunde und der Kulturbeziehungen zwischen Hellenismus und Armeniertum). տես Հանդ. Ամս. 1933, Թ. 3—6, էջ 283—305, Թ. 7—8, էջ 432—459 և Թ. 9—10, էջ 559—582։

## 2

Նախ մի քանի խոսք աշխարհագրական ստադիոնին վերաբերվող հայկական վկայությունների մասին։

Իմ «Կշիռները և չափերը» աշխատության մեջ չեն օգտըվել եյի այդ վկայությունների տպագիր բնագրերից։ Պրոֆ. Հանս ֆոն Մժիկը հնարավորություն է ունեցել օգտվել նաև Վիեննայի ձեռագիրներից, վորոնց օգնությամբ նա սրբագրել է մի քանի ընթերցվածներ, գլխավորապես, «Աշխարհացույց»-ի համառոտ խմբագրության մեջ։ Մեջ եմ բերում վերոհիշյալ վկայությունները՝ դեմ առ դեմ դնելով իմ աշխատության մեջ տրված ու Մժիկի ուղղած բնագրերը։

1. «Կշիռները յեվ չափերը». եջ 99՝

«Եւ է ասպարէզն ըստ օգաչափութեան քայլս հարիւր, և քայլն վեց ոտն, և ոտն վեշտասան մատն. մղոնն ասպարէզ մի։ Իսկ ասպարիզաց ասպարէզն է հարիւր քառասուն և երեք քայլ. և մղոնն է եւթն ասպարէզ, որպէս զի լինիլ գետնաչափութեամբ մղոնն հազար քայլ. և փարսախն երեք մղոն է» (տես «Մովսէսի Խորենացւոյ մատենագրութիւնք», էջ 588)։

1. Հանդ. Ամս. 1933, Թ. 3—6. եջ 300՝

«Եւ է ասպարէզն ըստ աւգաչափութեան քայլ Ճ. և քայլն է Զ ոտն. եւ ոտն է ԺԶ մատն. եւ մղոնն է Է ասպարէզ։ Իսկ ասպարիզաց ասպարէզն է ՃԽԳ քայլ. եւ մղոնն է Է ասպարէզ, որպէս զի լինել գետնաչափութեամբ մղոնն Ռ քայլ։ Եւ խրասախն Գ մղոն է»։

2. «Կշիռները յեվ չափերը», եջ 103՝

«Ասպարէզն է ըստ օգաչափութեան քայլ 107. և քայլն 6 ոտն. և ոտն 16 մատն։ Եւ մղոնն 7 ասպարէզ։ Իսկ ըստ Պարսից ասպարիսին 143 քայլ, որպէս լինել գետնաչափութեամբ մղոնն 1000 քայլ։ Եւ խրասխն 3 մղոն» (տես Ավգերյան, «Բացատրութիւն չափուց և կշռոց նախնեաց», Վենետիկ 1821, էջ 37. համեմատ նաև «Անանիայի Շիրակունւոյ, Մնացորդք բանից», Ս.-Պետերբ. 1877, էջ 32—33).

2. Հանդ. Ամս. 1933, Թ. 3—6, եջ 293՝

«Ասպարէզն է ըստ աւգաչափութեան քայլ ՃԷ. եւ քայլն Զ ոտն. եւ ոտն ԺԶ մատն։ Եւ մղոնն Է ասպարէզ։ Իսկ ըստ Պարսից ասպարէզն ՃԽԳ քայլ. որպէս լինել գետնաչափութեամբ մղոնն Ռ քայլ։ Եւ խրասխն Գ մղոն»։

Յ. «Կշիռները յեվ չափերը», եջ 106՝

*«Ու ասպարէզն հեռակցութիւն վտաւանի, և ըստ օղաչափութեանն հարիւր եօթն քայլ. եւ քայլն վեց ոտն, եւ ոտն վեշտասան մատն. եւ լինի ասպարէզն վեցհարիւր քառասուն եւ երեք ոտն միով պակաս Ու մղոնն է եօթն ասպարէզ. իսկ Պարսիցն ասպարէզն է հարիւր քառասուն և չորս քայլ. եւ գետնաչափութեամբ՝ հազար քայլ. եւ հրասախն է երեք մղոն» (տես «Աշխարհացոյց Մովսէսի Խորենացւոյ յաւելուածովք նախնեաց», հրատ. Ա. Սուքրյանի, Վենետիկ 1881, եջ 7)։*

Յ. Հանդ. Ամս. 1933, Թ. 3—6, եջ 295՝

*«Եւ ասպարէզն հեռակացութիւն վտաւանի, եւ ըստ աւղաչափութեանն հարիւր եւթն քայլ. և քայլն վեց ոտն, եւ ոտն վեշտասան մատն. եւ լինի ասպարէզն վեցհարիւր քառասուն և երեք ոտն միով պակաս Եւ մղոնն է եւթն ասպարէզ. իսկ Պարսիցն ասպարէզն է հարիւր քառասուն եւ երեք քայլ. եւ մղոնն գետնաչափութեամբ հազար քայլ. եւ հրասախն է երեք մղոն»։*

*Չափական իմ հաշիվների համար, ինչպես տեսնում ենք, միակ կարևոր փոփոխությունն է վերջին վկայության մեջ հետևյալ սրբագրությունը՝ «իսկ Պարսիցն ասպարէզն է հարիւր քառասուն եւ* երեք *քայլ»։ Սուքրյանի հրատարակած բուն ու միակ բնագիրն ունի՝ «իսկ Պարսիցն ասպարէզն է հարիւր քառասուն և* չորս *քայլ»։ Մատնանշված սրբագրությունն արել է ինքը Մժիկը, համարելով «չորս» ընթերցվածը գրչագրական պարզ ու անառարկելի մի սխալ*[1]*։ Այս սրբագրությունը սակայն, ինչպես կտեսնենք, վիճելի է և առարկելի։ Հարկավոր էր, անշուշտ, պահել հայերեն բնագրում, ինչպես և գերմաներեն թարգմանության մեջ, «չորս» ընթերցվածը, իսկ «երեք»-ը՝ իբրև հրատարակողի յենթադրություն՝ դնել փակագծի մեջ։*

---

*[1] Մժիկի գերմաներեն հոդվածի հայերեն ամփոփման մեջ թյուրիմացաբար ասված է, որ իբր թե իմ աշխատության մեջ «շատ անգամ իբրև գրչագրական սխալ» յես արհամարած եմ «ինչ որ անհամաձայն» գտած եմ իմ հաշվին (Հանդ. Ամս., 1933, Թ. 3—6 եջ 282)։ Այդ միանգամայն սխալ է։ Ընդհակառակը՝ հայկական վկայությունների մի քանի ընթերցվածներն արհամարված են իբրև գրչագրական սխալ ոչ թե իմ այլ Մժիկի աշխատության մեջ։*

Ձեռագիրների համեմատությամբ Մժիկի վերահրատարակած բնագրերը կարևոր են, անշուշտ, վորովհետև ասպարիսական չափերի ճշտման համար նա օգտվել ե Վիեննայի (Թ. 31, 115, 678, 731, 784) և մի քանի այլ ձեռագիրների վկայություններից։ Միանգամայն պարզ ե սակայն, վոր այս հրատարակությունը, վորը կատարված ե բազմազան աղբյուրների համադրությամբ ու համեմատությամբ, և վոչ մի կետում չի խախտում այն նախադրյալները, վոր հիմք եյին ծառայել իմ աշխատության.

3

Վերոհիշյալ վկայությունների լուսաբանման համար իբրև լուծման բանալի ծառայել եր ինձ Պարսից կամ «ասպարիզաց ասպարեզ»-ը, վորը յես համապատասխան եյի համարել արաբական ghalva-յին։ Ընդունելով այս ասպարեսի յերկարությունը 230,112 մետր՝ յես արել եյի իմ աշխատության մեջ բոլոր հնարավոր հաշիվները՝ հիմք ընդունելով վկայությունների տարբեր ու անգամ վիճելի թվերը։ Ի վերջո՝ համադրելով բոլոր հաշիվներն առանձին աղյուսակի մեջ՝ յես հանգել եյի այն յեզրակացության, վոր ստացված թվերից իրական են ու խիստ կարևոր թվական տվյալները, գլխավորապես, յերրորդ հաշվի (տես «Կշիռները և չափերը», եջ 110)՝

1. Պարսից կամ «ասպարիզաց ասպարեզ» - ը=144 քայլ=230,112 մետր.

2. Քայլը (վորը կրկնաքայլ ե)=230,112:114= =1,598 մետր.

3. Ասպարեսն «ըստ օդաչափութեան» (Երատոսթենեսի ստադիոնը)=100 քայլ=1,598 × 100= =159,8 մետր.

4. Ողաչափության ասպարեսի (Երատոսթենեսի ստադիոնի) վոտը=$^{1}/_{6}$ քայլ=1,598:6=0,266$^{1}/_{2}$ մետր.

5. Պարսից մղոնը=1000 քայլ=1,598×1000= =1.598 մետր։

Պրոֆ. Հանս ֆոն Մժիկն անընդունելի չի համարում, նախ և առաջ, այս հաշիվների հիմք ծառայող լուծման բանալին, այսինքն՝ Պարսից ասպարեսի և մղոնի վերոհիշյալ երկարությունները (230,112 մետր և 1.598 մետր)։ Պարսից այս ասպարեսն ու մղոնը նա ենթադրում է ո՛չ թե պարսկական, այլ հռոմեական չափեր։ Պրոֆ. Մժիկն ընդունում է միմիայն, որ ճիշտ է ստացվել իմ հաշվում Էրատոսթենեսի ստադիոնի երկարությունը։ Սակայն այդ, նրա կարծիքով, մի պատահականություն է, որ առաջ է եկել սխալ նախադրյալների բախտավոր զուգադիպումից (Հանդ. Ամս., 1933, թ. 3—6, էջ 572)։ Պրոֆ. Մժիկը պնդում է նույնպես, որ «Աշխարհացույց»-ի համառոտ ու ընդարձակ խմբագրություններում «քայլս հարիւր» և «հարիւր քառասուն և չորս» ընթերցվածները գրչագրական սխալներ են։

Մատնանշված այս պնդումները, որ գրեթե չեն պատճառաբանված, չեն կարող ըստ իս ճիշտ լինել, որովհետև վերոհիշյալ իմ հաշիվը հաստատվում է, ինչպես կտեսնենք, նոր ու հիմնավոր վկայություններով։

Իմ «Կշիռները և չափերը» լույս տեսնելուց հետո՝ Պարսից ասպարեսի մասին հաջողվեց ինձ գտնել կարևոր մի վկայություն «Մղոնաչափք»-ի ընդարձակ բնագրում,[1] Պետական Կենտրոնական Ձեռագրատան թ. 2679 հռչակավոր հին ձեռագրի մեջ (= Գեորգ. Ցուցակ, թ. 102), որ գրված է 971—981 թվականներին։ Նոր այս բնագրի հենց սկզբում այդ վկայությունը մեջ է բերված պարզապես այն նպատակով, որպես զի որոշ լինի այն մղոնների երկարությունը, որ գործ են ածված «Մղոնաչափք»-ի մեջ։ Կարևոր այդ վկայությունը, որ մանրամասն քննված է Ռուսաստանում լույս տեսնող վերոհիշյալ իմ աշխատության մեջ՝ հետևյալն է՝

«Ասպարէզն ՃՀ քայլ է. քայլն Զ ոտն է, ոտն ԺԶ

---

[1] «Մղոնաչափք»-ի այդ նոր բնագիրն իմ ուսումնասիրությամբ հանդերձ հրատարակվելու է Լենինգրադում հետևյալ վերնագրով՝ «Средневековый итинерарий в армянской рукописи десятого столетия»։

*մատն է. մղոնն Է ասպարէզ է. ըստ Պարսից ասպարէզն ՃԽԴ քայլ է. մղոնն Ռ քայլ է. հրասախն Գ մղոն» (Ձեռ. 2679, թերթ 206ա, ստուգված 208ա)։*

*Այս հաշիվը լուծելիս՝ պետք ե ի նկատի ունենալ, որ առաջին ասպարեսի 170 քայլ յերկարությունը նշանակված ե կլոր թվով։ Դժվար չե սակայն կռահել, որ այս ասպարեսը պետք ե յենթադրել $^1/_7$ մասը մի մեծ մղոնի, որի յերկարությունը յեղել ե 1200 քայլ։ Ուրեմն՝ այս ասպարեսը կարելի յե, իրապես, հավասար համարել 1200:7 կամ $171^3/_7$ քայլի։ Պարսից ասպարեսի յերկարությունը ցույց ե տրված «Աշխարհացույց»-ի ընդարձակ խմբագրության մեջ 144 քայլ (=230,112 մետր)։ Յեթե սակայն ընդունենք, որ այդ ասպարեսն ուղիղ $^1/_7$ մասն ե յեղել Պարսից մղոնի (=1598 մետր)՝ նրա յերկարությունը կլինի 1598:7=$228\,^2/_7$ մետր։ Ընդունելով Պարսից ասպարեսը համապատասխան արաբական* ghalva-*յի և հավասար 230.112 մետրի [կամ $228^2/_7$ մետրի=$142^6/_7$ քայլ]՝ կարող ենք հեշտությամբ որոշել «Մղոնաչափք»-ի վկայության բոլոր չափերը հետևյալ յերկարությամբ՝*

*1. Պարսից ասպարես=144 քայլ [$142^6/_7$]=230,112 մետր [$228^2/_7$].*

*2. «Քայլ» կամ կրկնաքայլ = 230,112 : 144 [$228^2/_7$:$142^6/_7$] = 1,598 մետր.*

*3. Պարսից մղոն = 1000 քայլ = 1598 մետր.*

*4. Վոտ = $^1/_6$ քայլ = 1,598:6 = $0,266^1/_3$ մետր.*

*5. Մատ = $^1/_{16}$ վոտ = $0,266^1/_3$:16 = $0,016^{31}/_{48}$ մետր.*

*6. Ասպարես (մյուս) = $^{1200}/_7$ քայլ = 1,598 × $^{1200}/_7$ = = $273,9^3/_7$ մետր.*

*7. Մղոն* (արաբական)*=1200 քայլ=1,598 × 1200= = 1917,6 մետր.*

*8. Փարսախ* (արաբական) *= 3 մղոն=1917,6 × 3 = = 5752,8 մետր [= 25 Պարսից ասպարեսի կամ* ghalva-*յի = 5752.8:230,112 = 25]։*

*Կարելի՞ չե միթե պատահական համարել, վոր այս հաշվում ևս ստացվում են իրական ու ծանոթ թվեր։ «Մղոնաչափք»-ի մղոնը և փարսախը, ինչպես տեսնում ենք, ճիշտ և ճիշտ համապատասխան են ստացվում արաբական մղոնին (=1917,6 մետր) և արաբական փարսախին (=5752,8 մետր)։ Վերոհիշյալ ռուսերեն իմ աշխատության մեջ ցույց ե տրված, վոր «Մղոնաչափք»-ը գրված ե իններորդ դարում։ Հասկանալի չե, ուրեմն, թե ինչու նրա մեջ, ինչպես և արաբական ուղեցույցներում, տարածությունները նշանակված են արաբական մղոնով, վորի յերկարությունն աշխարհագրագետները հաշվում են մոտավորապես 2 կիլոմետր,[1] իսկ Դեկուրդեմանշը յենթադրում ե համեմատական իր չափագիտության մեջ 1.917,6 մետր (տես* Traité pratique des poids et mesures des peuples anciens et des arabes, Paris 1909, *եջ 88)։*

*Վոր «Մղոնաչափք»-ի մղոնն ունեցել ե, իրոք, վերոհիշյալ յերկարությունը՝ այդ կարելի յե ստուգել հենց «Մղոնաչափք»-ի վկայություններով։ Նրա մեջ, որինակ, տարածությունը Դվինից Նախիջեվան ցույց ե տրված 70 մղոն, վոր վերոհիշյալ հաշվով հավասար ե 134 կիլ. (1.917,6×70= =134,232 կիլ.)։ Հենց այդքան ե մոտավորապես և այժմյան տարածությունը Դվին-Արտաշատից մինչև Նախիջեվան։*

*Միանգամայն պարզ ե, ուրեմն, վոր վոչ միայն հավանական ե ամբողջ մեր հաշիվը, այլ և Պարսից ասպարեսի և մղոնի յերկարությունները, վոր յենթադրել ենք 230,112* [$228\frac{2}{7}$] *և 1.598 մետր։*

*Յեթե հայկական աղբյուրներում անհայտ չափերը՝ ոդաչափության ասպարեսը և արաբական մղոնը՝ վորոշված են Պարսից ասպարեսի և Պարսից մղոնի համեմատությամբ՝ այդ կարելի յե ըստ իս բացատրել նրանով, վոր պարսկական այս ասպարեսն ու մղոնը հայտնի ու ծանոթ չափեր են յեղել հին Հայաստանում։ Ուշագրավ ե այդ տեսակետից, վոր Ռո-*

---

[1] *Պրոֆ. Մարկվարտը, որինակ, արաբական մղոնը հավասար ե ընդունում* $1\frac{1}{3}$ *հռոմեական մղոնի (տես* Osteuropäische und ostasiatische Streifzüge, Leipzig 1903, *եջ 212 և 238)։*

*ընացու պատմության մեջ հիշատակված ասպարեսը (II, Թ., էջ 166, Տփղիս 1913), ինչպես այդ յերևում ե Աճառյանի «Անահիտ»-ում տպած հոդվածից (1933), համապատասխանում ե իր յերկարությամբ Պարսից ասպարեսին և արաբական* ghalva-*յին (=230,112 մետր)։*

*Թե ինչու արաբական* ghalva-*ն համաչափ ե յեղել Պարսից ասպարեսին՝ այդ ևս դժվար չե բացատրել։ Միանգամայն հասկանալի յե, որ այդ ասպարեսը, որը հանրածանոթ չափ ե յեղել Մերձավոր Արևելքում, կարող եր պահպանված լինել արաբական տիրապետության ժամանակ, անվանվելով* ghalva, *որ նշանակում ե «նետաձիգ»։ Որ այս յենթադրությունը հավանական ե՝ այդ կարելի յե կռահել հայկական աղբյուրների հենց ցուցումներից, որոնք վկայում են, որ «ասպարէզն մէկ նետաձիգ է» (տես Հանդ. Ամս. 1933, Թ. 3—6, էջ 302 և 304)։ Ինձ թվում ե, որ նման վկայություններում ակնարկված են, հավանորեն, Պարսից կամ «ասպարիզաց ասպարէզ»-ը և նրան համապատասխանող արաբական «նետաձիգ»-ը։*

*Կարող ենք մեջ բերել նաև մի ուրիշ ապացույց, որը մի նոր կռվան ե դարձյալ «Մղոնաչափք»-ի վկայության վերոհիշյալ լուծման։ Պրոֆ. Մժիկը մատնացույց ե արել իր ուսումնասիրության մեջ, որ Իբն Սիդան լիաչափ փարսախը հավասար ե համարում 25* ghalva-*յի (տես Հանդ. Ամս., 1933, Թ. 7—8, էջ 458)։ «Մղոնաչափք»-ի վերոհիշյալ իմ հաշիվը հաստատվում ե, ինչպես տեսնում ենք, նաև այս վերջին վկայությամբ։ Համապատասխան հենց Իբն Սիդայի վկայության ստացվել եր նաև իմ հաշվում արաբական փարսախի և* ghalva-*ասպարեսի հետևյալ հարաբերությունը՝*

1. *Պարսից ասպարեսը կամ* ghalva-*ն = 230,112 մետր.*

2. *Արաբական փարսախը = 5.752,8 մետր.*

3. *Փարսախի ու* ghalva-*յի հարաբերությունը = = 5752,8 : 230,112 = 25 : 1.*

*Նոր այս դիտողությունները, թվում ե ինձ, ուշագրավ*

ապացույցներ են, որ կարևոր այս խնդրի լուծումը կարող ենք համարել բավարարաչափ հիմնավորված և Պարսից ասպարեսի յերկարությունն ընդունել 230,112 [$228\,^{2}/_{7}$] մետր։ Իսկ այս յեզրակացությունից ինքնին արդեն հետևում է, որ ճիշտ պիտի լինեն նաև Երատոսթենեսի ստադիոնի լուծման մյուս նախադրյալները՝ այսինքն՝ որ ողաչափության ասպարեսը հավասար է 100 քայլի և քայլը 6 ոտի։

«Աշխարհացույց»-ի համառոտ խմբագրությունն ողաչափության ասպարեսի մասին ունի, ինչպես վերև տեսանք, հետևյալ վկայությունը՝ «եւ է ասպարէզն ըստ օղաչափութեան քայլս հարիւր, եւ քայլն վեց ոտն, և ոտն վեշտասան մատն»։ Այս վկայության մեջ «քայլս հարիւր» ընթերցվածը չի կարող ըստ իս լինել գրչագրական սխալ, ինչպես այդ յենթադրում է պրոֆ. Մժիկը (Հանդ. Ամս., 1933, Թ. 7—8, էջ 455—456)։ Ընդհակառակը՝ թե այդ ընթերցվածը և թե ամբողջ վկայությունը, որ անաղարտ պահպանվել են հին և ընտիր ձեռագրերում, միանգամայն ստույգ են և առանձնապես կարևոր, որովհետև նրանք որոշում են ոչ միայն Երատոսթենեսի ստադիոնը, այլ և այդ ստադիոնին հիմք ծառայող քայլը և ոտը։

Իմ «Կշիռները և չափերը» լույս տեսնելուց հետո հաջողվեց ինձ, բարեբախտաբար, ստանալ արտասահմանից Հուլչի չափագիտական ընդարձակ աշխատությունը (Fr. Hultsch, Griechische und römische Metrologie, zweite Bearbeitung, Berlin 1882)։ Երատոսթենեսի ստադիոնը, ինչպես հայտնի յեղավ ինձ այդ աշխատությունից, ճիշտ է որոշած յեղել հենց Հուլչը, իսկ խառնաշփոթ ու սխալ հաշիվներն ընդունելի յեն համարվել նորագույն միայն յերկերում։ Հուլչը որոշել է Երատոսթենեսի ստադիոնը, հիմնվելով Պլինիուսի վկայության վրա։ Այդ վկայության ուղիղ լուսաբանությամբ ճշտվում են, ինչպես կտեսնենք, ոչ միայն Երատոսթենեսի ստադիոնը, այլ և այդ ստադիոնին հիմք ծառայող Երատոսթենեսի քայլը և ոտը։ Եվ առանձնապես կարևոր է ու հետաքրքիր, որ «Աշխարհացույց»-ի համառոտ խմբագրության

*«քայլս հարիւր» ընթերցվածը հաստատվում է ճշտիվ նաև այս կարևոր վկայությամբ։*

*Պլինիուսի վկայությունը մեջ եմ բերում անփոփոխ.*

*«Սքոյնոսը — ասում է Պլինիուսը-հավասար է համաձայն Էրատոսթենեսի հաշվի 40 ստադիոնի. ոմանք համարում են սքոյնոսը 32 ստադիոն»* (Nat. Hist. XII. 30,2)։

*Հուլչը միանգամայն ճիշտ է որոշել ըստ իս, որ այս վկայության մեջ սքոյնոսը յեգիպտական այն մեծ չափն է, որի յերկարությունը հավասար է յեղել 12,000 յեգիպտական արքայական կանգունի։ Այս կանգունը, որի յերկարությունը հաստատուն կերպով որոշված է, հավասար է համարում նա 0,525 այժմյան մետր. ուստի և Պլինիուսի վկայության չափերը ստացվել են նրա մոտ հետևյալ յերկարությամբ (տես* Metrologie, *եջ 61)՝*

*1. Յեգիպտական արքայական կանգունը = 0,525 մետր.*

*2. Յեգիպտական սքոյնոսը = 1200 արք. կանգուն = 12.000 × 0.525 = 6.300 մետր.*

*3. Էրատոսթենեսի ստադիոնը = ¹/₄₀ յեգիպտ. սքոյնոս = 6.300 : 40 = 157,8 մետր.*

*4. Էրատոսթենեսի ոտը = ¹/₂ արք. կանգուն = = 0,525 : 2 = 0,2625 մետր։*

*Յեթե իմ հաշվի մեջ Էրատոսթենեսի ստադիոնի և ոտի յերկարությունները ստացվել են 159,8 և 0,266¹/₃ մետր՝ դրա պատճառն այն է, որ հռոմեական չափերի համեմատությամբ յեգիպտական արքայական կանգունը համարվել է, ինչպես այդ յերևում է հենց Հուլչի աշխատությունից* (Metrologie, *եջ 609—610), 0,532 մետր [ավելի ճիշտ՝ 0,532²/₃ մետր]։ Ուստի և իմ հաշվում Էրատոսթենեսի ոտը հավասար է՝ 0,532²/₃ : 2 = 0,266¹/₃ մետր, իսկ Էրատոսթենեսի ստադիոնը՝ 0,266¹/₃ × 600 = 159,8 մետր։*

*Հուլչի մոտ անհավանական են, իմ կարծիքով, և միճելի Պլինիուսի վկայության վերջին մասի մեկնությունը։ Նա*

թեև ճիշտ է բացատրել, վոր Պլինիուսի մոտ սքոյնոսը սխալմամբ հավասար է համարված 5000 հռոմեական քայլի կամ 40 ատտիկական ստադիոնի (= 125 հռոմ. քայլ), սակայն նա ուշադրություն չի առել, վոր Պլինիուսը միաժամանակ մատնանշել է նաև իր ձեռքի տակ յեղած աղբյուրների հաշիվը, վորոնք սքոյնոսը համարել են 32 ստադիոն, այսինքն՝ 4000 քայլ (32×125=4000)։ Հուլչի յենթադրությունը, վոր իբր թե այդ ստադիոնները փոքրասիական են. ու հավասար 196,9 մետրի (Metrologie, էջ 570—572), ըստ իս հավանական չէ։ Պլինիուսի վկայությունից պարզապես հետևում է, վոր նրա աղբյուրները յեգիպտական սքոյնոսը հաշվել են, հակառակ իր յենթադրության, վո՛չ թե 5000, այլ 4000 քայլ կամ 32 ստադիոն։ Իսկ այս 4000 քայլը կամ ավելի ճիշտ կրկնաքայլը համարվելու յեն ըստ իս վո՛չ թե հռոմեական կամ փոքրասիական, ինչպես սովորաբար յենթադրում են, այլ հատուկ Երատոսթենյան։ Պլինիուսի, ինչպես և «Աշխարհացոյց»-ի համառոտ խմբագրության վկայություններից, պարզվում է, ուրեմն, վոր Երատոսթենեսի հատուկ «քայլ»-ի կամ կրկնաքայլի յերկարությունը պետք է ընդունել 1,598 մետր (յեգիպտական սքոյնոսը = 12.000 արք. կանգուն = 12.000 × 0,532²/₃ = 6.392 մետր, իսկ «քայլ»-ը = 6.392:4000 = 1,598 մետր)։

«Աշխարհացոյց»-ի համառոտ խմբագրության վկայությունն ուշագրավ է, ինչպես տեսնում ենք, այն տեսակետից, վոր նրա ոգնությամբ վորոշվում են վո՛չ միայն Երատոսթենեսի ստադիոնը և վոտը, այլև նրա հատուկ «քայլ»-ը կամ կրկնաքայլը·

1. Երատոսթենեսի ստադիոնը = 100 քայլ = = 159,8 մետր [Hultsch՝ 157,5 մետր].

2. Երատոսթենյան «քայլ»-ը = 6 վոտ = 159,8 : 100 = = 1,598 մետր.

3. Երատոսթենյան վոտը = 1,598 : 6 = 0,266¹/₃ մետր [Hultsch՝ 0,2625 մետր]։

Այս հաշիվը, վոր համապատասխանում ե Պլինիուսի և համառոտ «Աշխարհացույց»-ի վկայություններին, կարելի յե, ինձ թվում ե, համարել վերջնական ու անտարակուսելի։ Միանգամայն հասկանալի յե, վոր Երատոսթենեսին, վորը Հունաստանից Աղեքսանդրիա յեր յեկել յերրորդ դարում Քրիստոսից առաջ, հայտնի յեն յեղել, գլխավորապես, հունական և յեգիպտական չափերը։ Նա համարել ե իր ստադիոնը, բնականաբար, հունական չափերի համեմատ 100 orgyia կամ կրկնաքայլ և 600 վոտ։ Հենց այդպես ել ճշտիվ ունի «Աշխարհացույց»-ի համառոտ խմբագրությունը՝ «ասպարէզն ըստ օդաչափութեան քայլս հարիւր, և քայլն վեց ոտն»։ Միանգամայն պարզ ե նույնպես, վոր համառոտ այս խըմբագրության «քայլս հարիւր» ընթերցվածը չե կարող լինել գրչագրական սխալ, ինչպես այդ թյուրիմացաբար կարծում ե պրոֆ. Մժիկը։

Անհավանական կըլինի ըստ իս գրչագրական սխալ յենթադրել նաև «Աշխարհացույց»-ի ընդարձակ խմբագրության «Պարսիցն ասպարէզն է հարիւր քառասուն և չորս քայլ» ընթերցվածը։ Պրոֆ. Մժիկն ուշադրության չե առել համապատասխան հատվածների տարբեր խմբագրություններն ընդարձակ «Աշխարհացույց»-ում և մյուս վկայություններում։ Այդ հատվածները կարևոր եմ համարում դնել դեմ առ դեմ։

1. «Աշխարհացոյց»-ի համ. խմբագրութ.

«Իսկ ասպարիզաց ասպարէզն է հարիւր քառասուն և երեք քայլ. եւ մղոնն է եւթն ասպարէզ, որպէս զի լինել գետնաչափութեամբ մղոնն հազար քայլ»։

2. «Յաղագս ընթացից արեգական».

«Իսկ ըստ Պարսից ասպարիսին ՃԽԴ քայլ, որպէս լինել գետնաչափութեամբ մղոնն Ռ քայլ»։

3. «Աշխարհացոյց»-ի ընդարձ. խմբագրութ.

«Իսկ Պարսիցն ասպարէզն է հարիւր քառասուն և չորս քայլ. եւ [մղոնն] գետնաչափութեամբ հազար քայլ»։

Համեմատելով այս հատվածները՝ պարզ տեսնում ենք, որ առաջին երկու վկայություններում Պարսից կամ «ասպարիզաց ասպարէզ»-ը հաշված է 143 քայլ ($= 1000/7 = 142\,6/7$), որպես զի գետնաչափության մղոնը հավասար լինի 1000 քայլի, իսկ երրորդ վկայության մեջ «որպէս զի լինել» կամ «որպէս լինել» խոսքերը բացակայում են։ Ինձ թվում է, որ «Աշխարհացոյց»-ի ընդարձակ խմբագրության մեջ այդ բառերը չկան այն պարզ պատճառով, որ երրորդ հատվածի հեղինակը Պարսից իրական ասպարեսը համարել է մղոնի $1/7$ մասը վոչ թե ճշտիվ, այլ մոտավորապես։ Անհավանական չէ ըստ իս, որ հայկական մյուս աղբյուրների ՃԽԳ ընթերցվածը հետագայում կատարված նպատակավոր մի ուղղում է, որպես զի Պարսից կամ «ասպարիզաց ասպարէզ»-ի երկարությունը լինի ճշտիվ $1/7$ մղոն ($= 1000/7 = 142\,6/7$, կլոր թվով 143)։

Այս խնդրի վրա ես առանձնապես կանգ չեմ առնում, վորովհետև իմ առաջարկած ՃԽԴ ընթերցվածի մերժումը չի կարող անդրադառնալ Էրատոսթենեսի ստադիոնի և «Մղոնաչափք»-ի վկայության վերոհիշյալ լուծումների վրա։ Այդ լուծումները հիմնված են վոչ միայն Պարսից կամ «ասպարիզաց ասպարէզ»-ի, այլ և Պարսից մղոնի երկարության վրա։ Ընդունելով անգամ, որ Պարսից ասպարեսը հավասար է եղել $142\,6/7$ քայլի — վոր ես անհավանական եմ համարում — նրա երկարությունը կըստացվի վոչ թե 230,112, այլ $228\,2/7$ մետր ($1598:7 = 228\,2/7$), սակայն Պարսից մղոնը և Էրատոսթենյան ու արաբական բոլոր վերոհիշյալ չափերը կըմնան, այնուամենայնիվ, անփոփոխ ու հաստատուն։

Մնում է մեզ պարզել, որ արաբական տիրապետությունից առաջ վոչ միայն Պարսից կամ «ասպարիզաց ասպարէզ»-ը, այլ և Պարսից մղոնը գոյություն է ունեցել իբրև իրական ու գործածական չափ՝ Սասանյան Պարսկաստանում և, ամենայն հավանականությամբ, նաև Հայաստանում։

Պետք է ասել, որ հատկապես այս կետում Դեկուրդե-



մանչի տվյալներն (տես Traité pratique, եջ 82 և 88) ավելի հավանական են, քան Հուլչինը, որին հետևում է պրոֆ. Մժիկը։ Հուլչը, հակառակ պարսկական հին աղբյուրների վկայության, պարսկական նոր մղոնը համարում է 900 կրկնաքայլ և 1700 արքայական կանգուն, հավասար 1420 մետրի (տես Metrologie, եջ 477)։ Նրա այս ընթադրական հաշիվը, ինձ թվում է, վիճելի է ու անհավանական, որովհետև պարզապես հակասում է սկզբնական աղբյուրների վկայություններին, որոնք մեջ են բերված հենց իր աշխատության մեջ (Metrologie, եջ 477, ծան. 2)։ Bûndahisch-ում, ինչպես հայտնի է, մատնանշված է ճշտիվ, որ hâsar-ը («հազար») կամ մղոնը կազմում է պարասանգի մեկ քառորդը, իսկ պահլավերեն հին բառարանում պարզ ու որոշված է, որ hâsar-ը 1000 քայլ է, այսինքն՝ կրկնաքայլ։ Պարսկական մղոնի նույն երկարությունը մատնացույց է արված Անանիա Շիրակացուն վերագրված «Աստեղաբաշխութեան» մեջ (տես Աճառյան «Բացատրութիւն չափուց և կշռոց», եջ 46)։ Այս վկայությունները վերաբերվում են, անշուշտ, Սասանյան Պարսկաստանի մղոնին, որն անվանված է hâsar։ Պարզ է, ուրեմն, որ պարսկական նոր մղոնի երկարությունը չի կարելի համարել 900 կրկնաքայլ, ինչպես այդ ընթադրում է Հուլչը։

Արդ՝ ինչպես ճիշտ որոշել է հենց ինքը Հուլչը, աղբյուրներում մատնանշված քայլը կամ կրկնաքայլը հավասար պիտի ընդունել 3 արքայական կանգունի, որի երկարությունը մենք հաշվել ենք վերև 0,532$\frac{2}{3}$ մետր, իսկ Հուլչը՝ 0,525 մետր։ Ստացվում է, ուրեմն, վերոհիշյալ վկայությունների հետևյալ լուծումը՝

1. Կրկնաքայլ = 3 արք. կանգուն = 0,532$\frac{2}{3}$ $\times$ 3 = 1,598 մետր. [ըստ Հուլչի՝ 0,525 $\times$ 3 = 1,575 մետր].

2. Մղոն կամ hâsar = 1000 կրկնաքայլ = 1.598 մետր [1575].

3. Պարասանգ = 4 մղոն = 1.598 $\times$ 4 = 6.392 մետր [6300]։

Այս լուծման մեջ պարասանգը հավասար է ստացվում, ինչպես տեսնում ենք, եգիպտական սքոյնոսին, որի երկարությունը որոշված է 12.000 եգիպտական արքայական կանգուն կամ 6392 [6300] մետր։ Ծեվ պարասանգի այս երկարությունը միանգամայն հավանական է, որովհետև հնագույն Հերոնյան աղյուսակը, ինչպես և աղեքսանդրյան ու հելլենական չափագետները, վկայում են որոշակի, որ եգիպտական սքոյնոսը և պարսկական պարասանգը եղել են հավասարաչափ (տես Hultsch, Metrologie, էջ 478, 569, 570 և 612)։

Որ Հուլչի ենթադրությունը պարսկական նոր մղոնի մասին առարկելի չէ ու վիճելի, այդ երևում է այժմ և հայկական աղբյուրների վերև քննված վկայություններից, որոնց մեջ հիշատակված են, ինչպես տեսանք, պարսկական նույն մղոնը (=1598 մետր) և համապատասխան կրկնաքայլը (=1,598 մետր)։

Պարզվում է ըստ այսմ, որ արաբական տիրապետությունից առաջ Սասանյան Պարսկաստանում գործածական է եղել արևելյան այն մղոնը, որը չափագիտության մեջ անվանվում է փիլետերյան-հռոմեական։[1] Իսկ այս հետևությունը, որ խիստ կարևոր է համեմատական չափագիտության համար, դյուրավ հասկանալի է, որովհետև փիլետերյան են եղել, ինչպես հայտնի է, երկարության չափերը Պերգամոնում, Եգիպտոսում և, հավանորեն, արևելյան նաև ուրիշ երկրներում։

---

[1] Փիլետերոս, ինչպես հայտնի է, Պերգամոնի թագավորության հիմնադրի անունն է և նրա հաջորդների մականունը։ Երբ հռոմայեցիները նվաճեցին Պերգամոնը և դարձրին հռոմեական նահանգ (129 թ. Ք. առ.)՝ նրանք պահեցին այստեղ տեղական չափերը, որոնք Պերգամոնի թագավորների անունով կոչվում էին փիլետերյան։ Այնուհետև նրանք բոլոր նման չափերը, որ գործածական էին Պտոլեմյան Եգիպտոսում և արևելյան ուրիշ երկրներում, անվանում էին դարձյալ փիլետերյան։ Այդ չափերը նրանք հարմարեցրին իրենց չափական սիստեմին և գործ էին ածում այնուհետև իբրև փիլետերյան-հռոմեական չափեր, գլխավորապես, արևելյան երկրներում։

*Նոր այս յենթադրությունը Պարսից մղոնի և Պարսից ասպարեսի մասին հիմնավորված է, ինչպես տեսնում ենք, փաստական ուշագրավ դիտողություններով։ Կարող ենք, ուրեմն, միանգամայն հավանական համարել, որ «Աշխարհացույց»-ի համառոտ խմբագրության մեջ, որը հիմք էր ծառայել վերոհիշյալ իմ հաշվի, հիշատակված են, իրոք, Սասանյան Պարսկաստանի ասպարեսը և մղոնը, որոնց յերկարությունը որոշվում է նաև պարսկական ու հունական աղբյուրների ոգնությամբ։ Իսկ այս, անտարակույս, ուշագրավ մի ապացույց է, որ Երատոսթենեսի ստադիոնի վերոհիշյալ իմ լուծումը կարելի յե համարել ստույգ ու արժանի հատուկ ուշադրության։*

4

*Իմ «Կշիռները և չափերը» աշխատության մեջ յես փորձել եյի, բացի «Աշխարհացույց»-ի համառոտ խմբագրության վկայությունից, լուսաբանել նաև «Ցաղագս ընթացից արեգական եւ համարոյ չափուց» հատվածի վկայությունը, որի մեջ ոդաչափության ասպարեսի յերկարությունը ցույց է տրված վոչ թե 100, այլ 107 քայլ։ Քննության առնելով այս նոր վկայությունը՝ յես մուտն եյի համարել թե նրա «նախադրյալները և թե ամբողջ հաշիվը»։ «Հարցի վերջնական պարզաբանումը — առանձնապես շեշտել եյի յես — թողնում ենք մասնագետ մետրոլոգներին և հրավիրում նրանց ուշադրությունը նաև այս յերկրորդ հաշվի վրա» (եջ 105)։*

*Հենց այս վկայությունն իր ընդարձակ ու ուշագրավ աշխատության մեջ լուսաբանել է այժմ պրոֆ. Մժիկը, որը հին ու ստույգ է համարում միմիայն այս յերկրորդ վկայությունը՝*

> *«Ասպարէզն է ըստ օդաչափութեան քայլ ՃԷ.եւ քայլն Ձ ոտն, եւ ոտն ԺԶ մատն։ Եւ մղոնն Է ասպարէզ։ Իսկ ըստ Պարսից ասպարէզն ՃԽԳ քայլ. որպէս լինել գետնաչափութեամբ մղոնն Ռ քայլ» (տես Հանդ. Ամս., 1933, Թ, 3—6, եջ 293)։*

*Տեսնենք մանրամասն, թե ինչպես է լուծում պրոֆ. Մժիկն այս նոր հաշիվը։ Նա վորոշած է յեղել նախապես, վոր Պտոլեմեոսի «Աշխարհագրութեան» մեջ գործածված ասպարեսը, իբրև հռոմեական մղոնի $^{1}/_{7}$ մասը, ունեցած պիտի լինի 210 մետր յերկարություն։ Հիմնվելով, բացի այդ, Երատոսթենեսի և Պտոլեմեոսի աշխարհագրական վկայությունների հատուկ իր քննության վրա՝ նա յենթադրում է, վոր Երատոսթենեսի և Պտոլեմեոսի տարբեր ստադիոնների չափական հարաբերությունը հավանական է ընդունել 3:4, այսինքն՝ 157,5:210։*

*Այնուհետև՝ նախնական հենց այս դիտողությունները յելակետ են ծառայում նրան նաև հայկական վկայությունների լուծման։*

*Վորովհետև «Ցաղագս ընթացից արեգական» հատվածում ոտաչափության ասպարեսը համեմատված է Պարսից ասպարեսի հետ իբր 3:4 ($=107^{1}/_{7}:142^{6}/_{7}$, կլոր թվով 107:143)՝ նրան դժվար չպիտի լիներ, բնականաբար, գտնել նրա մեջ վերոհիշյալ միևնույն չափերը։ Ընդունելով, վոր Պարսից մղոնը համարվելու յե, իրապես, հռոմեական մղոն՝ նա տալիս է վերոհիշյալ վկայության իր նոր լուծումը վորոշ մանրամասնություններով՝*

*1. Մղոն «գետնաչափութեամբ» կամ հռոմեական մղոն = միջին հաշվով 1480 մետր.*

*2. Կրկնաքայլ հռոմեական = 5 վոտի 0,296 մետր յերկարությամբ = $0{,}296 \times 5 = 1{,}480$ մետր.*

*3. «Ըստ Պարսից ասպարէզ» = $^{1}/_{7}$ հռոմեական մղոն կամ $142^{6}/_{7}$ հռոմեական կրկնաքայլ = 1480:7 կամ $1{,}480 \times 142^{6}/_{7}$ = մոտ 211,4 մետր.*

*4. Նույն ասպարեսը = 600 պտոլեմյան վոտ 0,3524 մետր յերկարությամբ = $0{,}3524 \times 600$ = մոտ 211,4 մետր.*

*5. Երատոսթենեսի ստադիոն = $107^{1}/_{7}$ հռոմեական կրկնաքայլ = $1{,}480 \times 107^{1}/_{7}$ = մոտ 158.57 մետր.*

*6. Նույն ստադիոնը = 600 վոտ 0,2643 մետր յերկարությամբ = $0{,}2643 \times 600$ = մոտ 158,57 մետր.*

*7. Փոքր մղոն = 4000 պտոլեմյան մեծ վոտ = = $0{,}3524 \times 4000 = 1409{,}6$ մետր։*

Պրոֆ. Մժիկի այս հաշիվը՝ թեև հետաքրքիր է ու ուշադրության արժանի, սակայն ունի ըստ իս բավականաչափ մութ ու բացատրության կարոտ կետեր։ Եվ ինձ թվում է, որ այս լուծման դեմ կարող են լինել լուրջ առարկություններ։

Նախ և առաջ, անհասկանալի է, թե ինչու Նոր այս լուծման մեջ Պարսից ասպարեսին համապատասխանող գետնաչափության մղոնը, որը պարզապես պարսկական մղոն է, համասարաչափ է ստացվել հռոմեական մղոնին։ Պրոֆ. Մժիկը ենթադրում է, որ հայկական վկայության մեջ, որը հելլենական մատենագրությունից քաղված հարազատ մի բեկոր է, «Պարսից» բառի տակ պետք է հասկանալ Աղեքսանդր Մեծի ասիական-եգիպտական աշխարհակալությունը. հետևաբար՝ «Պարսից» նշանակում է ոչ թե «պարսկական», այլ «արևելյան»։

Այս բացատրությունը, իհարկե, բռնազբոսիկ է ու անհավանական։

Հելլենական մատենագիրները հռոմեական մղոնը և նրա յոթերորդամաս ասպարեսը կանվանեին, հավանորեն, ոչ թե «Պարսից», այլ կըտային նրանց այն անունները, որ հայտնի էին հելլենական աշխարհում։ Որ վերոհիշյալ բացատրությունն անհավանական է՝ այդ երևում է այժմ «Մղոնաչափք»-ի նոր վկայությունից։ Այդ վկայության մեջ Պարսից նույն ասպարեսը, հակառակ պրոֆ. Մժիկի ենթադրության, համապատասխան է, ինչպես տեսանք, արաբական ghalva-յին (=230,112 մետր), որի համեմատությամբ որոշված են արաբական մղոնը և արաբական փարսախը։ Ուշագրավ է նաև, որ «Աշխարհացույց»-ի համառոտ խմբագրության մեջ Պարսից ասպարեսն անվանված է «ասպարիզաց ասպարէզ»։ Այդ վկայությունը, որ ունի հատուկ ու հասկանալի իմաստ, ոչ թե դրչագրական սխալ է, ինչպես կարծում է պրոֆ. Մժիկը, այլ կարևոր մի ակնարկ է, որ Պարսից ասպարեսը, լինելով Հայաստանում հանրածանոթ

*տեղական մի չափ, համարվել ե Պարսից մղոնի յոթերորդամասն ամենամեծ ասպարեսը։*

*Ինձ թվում ե, բացի այդ, վոր կասկածելի կարելի յե համարել պրոֆ. Մժիկի նաև բուն հաշիվը։*

*Նրա լուծման մեջ բռնազբոսիկ ե ու վիճելի վերոհիշյալ հատվածում մատնանշված «քայլ»-ի վորոշումը։*

> *«Ասպարէզն է ըստ ուղաչափութեան — ասված ե հատվածում — քայլ ՃԷ, եւ քայլն Զ ոտն, եւ ոտն ԺԶ. մատն»։*

*Պրոֆ. Մժիկն առաջին «քայլ»-ը յենթադրում ե հռոմեական* passus *կամ կրկնաքայլ հավասար 5 վոտի* ($=0,296 \times 5= =1,480$ *մետր), իսկ մյուս «քայլ»-ը՝ տարբեր կրկնաքայլ՝ հավասար 6 վոտի* ($=0,2642 \times 6=$ *մոտ 1,5857 մետր)։ Թեև նրա հաշվի մեջ հիշատակված են միայն համապատասխան վոտերը՝ 0,296 և 0,2643 մետր, սակայն միանգամայն պարզ ե, վոր այդ յերկու տարբեր կրկնաքայլը նրա հաշվի հիմնական նախադրյալներն են։ Իսկ «քայլ»-երի այս տարբերումը*[1] *պարզապես վիճելի մի յենթադրություն ե, վոր չե հարմարվում վկայության հավանական ու իսկական իմաստին։*

*Առանձնապես ուշագրավ ե նաև այն, վոր Երատոսթենյան վոտի իր հաշվում Երատոսթենեսի ստադիոնը յենթադրում ե պրոֆ. Մժիկը վոչ թե* $107\frac{1}{7}$*, այլ «100 քայլ և քայլն 6 ոտն» (Երատոսթ. ստադ.՝ 158,57 մետր, Երատոսթ. «քայլ»-ը=158,57:100=1,5857 մետր և Երատոսթ. վոտը= =1,5857:6 = մոտ 0,2643 մետր)։ Ուրեմն՝ ճիշտ այնպես, ինչպես վոր մատնանշված ե «Աշխարհացույց»-ի համառոտ խմբագրության և իմ լուծման մեջ։*

*Այս դիտողություններից դժվար չե յեզրակացնել, վոր պրոֆ. Մժիկի բռնազբոսիկ յենթադրությունը Պարսից աս-*

---

1 *Վոր վերոհիշյալ «քայլ»-երը միևնույն մեծության կրկնաքայլ են համարել՝ այդ պարզ յերևում ե «Աշխարհացույց»-ի ընդարձակ խմբագրության վկայությունից, վորի մեջ ողաչափության ասպարեսի մասին ասված ե, վոր «լինի ասպարէզն վեցհարիւր քառասուն եւ երեք ոտն միով պակաս»* ($107\frac{1}{7} \times 6$ *կլոր թվով 642 կամ 643 վոտ)։*

պարեսի և Պարսից մղոնի մասին, ինչպես և «քայլ»-երի նրա անհավանական հաշիվը, վիճելի չեն դարձնում նրա ամբողջ լուծումը։ Այդ արվեստական ու բարդ լուծումը, վորը կանխորոշված է յեղել այլ նախադրյալների ոգնությամբ, ինչպես տեսնում ենք, դժվար է ընդունել զուգընթաց ու համապատասխան «Ցաղագս ընթացից արեգական» հատվածի պարզ ու վորոշ վկայություններին։

## 5

Կարևոր եմ համարում մեջ բերել այստեղ իմ նոր դիտողությունները նաև այն մղոնի մասին, վորի համեմատ վորոշած է յեղել Երատոսթենեսն աշխարհագրական իր ստադիոնի յերկարությունը։ Այդ դիտողություններն ուշագրավ մի կռվան են դարձյալ, վոր կարելի յե հին ու միանգամայն հավաստի համարել «Աշխարհացույց»-ի համառոտ խմբագրության վկայությունը, վորը հիմք է ծառայել վերոհիշյալ իմ լուծման։

Երատոսթենեսի ստադիոնի յերկարությունը ստացվել եր իմ լուծման մեջ 159,8 մետր։ Պարզվում է ըստ այսմ, վոր աշխարհագրական այդ չափը տասներորդամասն ապարես է հին յեգիպտական կամ պտոլեմյան մղոնի, վորը հռոմայեցիներն անվանել եյին փիլետերյան մղոն։

Պլինիուսի վկայությունից մենք գիտենք, վոր սքոյնոսը հավասար է յեղել համաձայն Երատոսթենեսի հաշվի 40 ստադիոնի (Nat. Hist. XII, 30, 2)։ Իսկ Հերոնյան հին աղյուսակի վկայությունից հայտնի յե, վոր հին յեգիպտական ու պտոլեմյան այդ մեծ չափը հավասար է համարվել 4 մղոնի (տես Hultsch, Metrologie, եջ 612)։ Յեվ վորովհետև այդ սքոյնոսի յերկարությունը ճշտիվ վորոշված է, ինչպես տեսանք, 6392 մետր [ըստ Հուլչի՝ 6300 մետր], ուրեմն ճշտվում է նաև թե պտոլեմյան մղոնի յերկարությունը և թե սրա ու Երատոսթենեսի ստադիոնի 10 առ 1 հարաբերությունը՝

1. Հին յեգիպտական կամ պտոլեմյան սքոյնոս=
=4 մղոն=40 ստադիոն=6392 [6300] մետր.

2. Էրատոսթենեսի ստադիոն=$^{1}/_{40}$ սքոյնոս=$^{1}/_{10}$ մղոն=6392 [6300]:40=159,8 [157,5] մետր.

3. Պտոլեմյան մղոն=$^{1}/_{4}$ սքոյնոս=10 Էրատ. ստադիոն=6392 [6300]:4=1598 [1575] մետր։

4. Պտոլեմյան մղոնի և Էրատոսթենեսի ստադիոնի հարաբերությունը=1598:159,8=10:1։

Արդ՝ հետաքրքիր է ու ուշագրավ, որ հայկական աղբյուրներում հիշատակված է Էրատոսթենյան նաև այդ մղոնը։ Սակայն նրանց մեջ համապատասխան վկայությունը պարզապես աղավաղված է, և իսկական այդ աղավաղումը վրիպել է և իմ և պրոֆ. Մժիկի ուշադրությունից։ «Աշխարհացոյց»-ի համառոտ խմբագրության հին և ընտիր ձեռագրերն ողաչափության այդ մղոնի մասին վկայում են, որ «մղոնն ասպարէզ մի» (տե՛ս Վենետիկյան հրատակ. 1843, էջ 588)։ Իսկ «Յաղագս ընթացից արեգական» հատվածը և «Աշխարհացոյց»-ի ընդարձակ խմբագրությունը նույն մղոնի մասին ունեն տարբեր ընթերցված՝ «մղոնն է ասպարէզ» կամ «մղոնն է եւթն ասպարէզ»։

Պրոֆ. Մժիկն «Աշխարհացոյց» ի համառոտ խմբագրության իր հրատարակած բնագրում «և մղոնն ասպարէզ մի» ընթերցվածն ուղղել է համաձայն Վիեննայի Թ. 784 և 731 ձեռագրերի՝ «եւ մղոնն է է ասպարէզ» (տե՛ս Հանդ. Ամս., 1933, Թ. 3—6, էջ 300)։ Այս ուղղումը սակայն, ինչպես իրավացի կերպով մատնանշված է յեղել Վենետիկի հրատարակության մեջ, պետք է համարել անհավանական։ Պահելով ողաչափության և գետնաչափության մղոնների մասին ընտիր ձեռագրերի ընթերցվածները՝ Վենետիկի հրատարակության խմբագրողն առանձնապես շեշտել է հատուկ ծանոթության մեջ, որ «զայդ կարգ ունին ընտիր օրինակքն. զոր ոմանց հակասութիւն կարծեցեալ անշուշտ ընդ նախընթացին «մղոնն ասպարէզ մի», զհատուածդ «և մղոնն է եւթն ասպարէզ» անդ փոխեալ են, և զմիւսն ի բաց բարձեալ վայրապար. զի մատենագիրս զմղոնաչափն երկատեսակ աւան-

*դէ, անդ ըստ օդաչափութեան, և աստ ըստ գետնաչափութեան» (տես Վենետ. հրատար. 1843, էջ 588, ծան. 7)։*

*Խմբագրողի այս դիտողությունը, ինչպես տեսնում ենք, հիմնավոր է ու արժանի ուշադրության։ Պետք է սակայն ինկատի ունենալ, որ բացի ծանոթության մեջ մատնանշված ընթերցվածից աղճատված է նույնպես և ընտիր օրինակների ընթերցվածը։ Լինելով սքոյնոսի քառասներորդ մասը՝ Էրատոսթենեսի ստադիոնը չէր կարող, իհարկե, լինել ո՛չ հավասարաչափ մղոնի, ո՛չ էլ մղոնի յոթերորդամասն ասպարես։ Ինձ թվում է, որ հայերեն նախնական բնագրի ընթերցվածը պետք է, հավանորեն, լիներ «մղոնն ասպարէզ Ժ» փոխանակ «մղոնն ասպարէզ մի»։ Այս ուղղումը, թեև հիմնված չէ ձեռագրական ընթերցվածների վրա, սակայն կարող է հավանական լինել, որովհետև Էրատոսթենեսի ստադիոնը, ինչպես վերև տեսանք, տասներորդամասն ասպարես է եղել պտոլեմյան մղոնի։*

*Եթե ընդունելի համարվի այս ուղղումը՝ վերջնականապես որոշված կլինեն, համաձայն «Աշխարհացոյց»-ի համառոտ խմբագրության, ո՛չ միայն Էրատոսթենեսի ստադիոնը և նրան համապատասխանող քայլը և ոտը, այլ և ոդաչափության Էրատոսթենեսի մղոնը՝*

1. *Էրատոսթենյան քայլ=1,598 [1,575] մետր.*
2. *Էրատոսթենեսի ստադիոն = 100 քայլ = 159,8 [157,5] մետր.*
3. *Էրատոսթենյան մղոն=1000 քայլ=1598 [1575] մետր.*
4. *Էրատոսթենյան ոտ=$^1/_6$ քայլ=0,266$^1/_3$ [0,2625] մետր։*

*Միանգամայն պարզ կլինի նույնպես, որ Աղեքսանդրիայի հանճարեղ աշխարհագրագետն ընտրած է եղել իր հաշիվների համար ամենապարզ ու դյուրամատչելի չափերը, հիմք ընդունելով չափական պտոլեմյան սիստեմը և հին եգիպտական կամ պտոլեմյան այն հանրածանոթ մղոնը, որը*

հետագայում անվանված ե լեգել փիլեաերյան կամ փիլետերյան-հռոմեական։

Ողաչափության կամ Երատոսթենյան մղոնի վերոհիշյալ վորոշումից յերևում ե, վոր այդ մղոնը և «գետնաչափութեան» կամ Պարսից նոր մղոնն ունեցել են միևնույն յերկարությունը (=1598 մետր)։ Կարելի յե, ուրեմն, հավանական համարել, վոր Պարսից այս մղոնը՝ հավասար լինելով հին յեգիպտական կամ փիլետերյան մղոնին՝ գոյություն ունեցած պիտի լիներ Պարսկաստանում վոչ միայն Սասանյանների ժամանակ, այլ և նրանցից առաջ։

Ինձ թվում ե, բացի այդ, վոր նույն այս մղոնով են հաշվված հայկական աղբյուրներում աշխարհագրական աստիճանը կամ «մասն»-ը, վոր հանգամանորեն քննության ե առնված պրոֆ. Մժիկի ուսումնասիրության մեջ։ Այդ վկայություններն ավելորդ չեմ համարում մեջ բերել համաձայն պրոֆ. Մժիկի նոր հրատարակության (տես Հանդ. Ամս., 1933, Թ. 3 6, եջ 293, 295, 300 և 302—303, նաև Թ. 9—10, եջ 581)։

1. «Յաղագս ընթացից արեգական» հատվածում՝

«Բայց աւգաչափութեամբ երկրաչափութեան մասն ԵՃ ասպարէզ ի լայնն և յերկայննն չորեքկուսի միաչափ».

2. «Աշխարհացոյց»-ի ընդարձակ խմբագրության մեջ՝

«Եւ երկրաչափութեամբ մասն է հինգ հարիւր ասպարէզ չորեքկուսի․որպէս զի լինիլ մասինն ութանասուն եւ մի մղոն եւ չորեակ ութնեակ և քսան եւ ութեակ մի».

3. «Աշխարհացոյց»-ի համառոտ խմբագրության մեջ՝

«Բայց աւգաչափութեամբ երկրաչափութեան մասն Շ ասպարէզ ի լայնն եւ նոյնչափ յերկայնն չորեքկուսի։ Որպէս զի լինել մասին ՀԱ մղոն Դ. Է. Ի եւ Ը».

4. Վիեննայի Թ. 115 ձեռագրում՝

«Մասն ՀԱ մղոն է եւ Շ ասպարէզ ի լայնն եւ երկայնն չորեքկուսի միաչափ»։

5. Անանուն հեղինակի հատվածում (Փարիզի Թ. 114 ձեռագ.)՝

«Եւ մասն Շ ասպարէզ է, եւ ասպարէզն վտաւանի հեռակացութիւն է։ Թաւալումն արեգական Շ ասպարէզ է եւ ասպարէզն մէկ նետաձիգ է.... Շ ասպարէզն ՀԵՌ քայլ է. մէկ հոլովումն ՀԲ մղոն է»։

6. Վիեննայի Թ. 678 ձեռագրում՝

«Եւ Ա մասն հոլով մի է արեգական. հոլովն է Շ ասպարէզ.... եւ ասպարէզն Ա նետաձիգ է»։

Պրոֆ. Մժիկը համարում է հին և կարևոր «Ցաղագս ընթացից արեգական» հատվածի վկայությունը, վոր չունի մղոնի վերաբերյալ հատուկ հաշիվը։ Ասպարեսն այդ վկայության մեջ, նրա կարծիքով, ոգաչափական, հավանորեն, ասպարեսն է 158,57 մետր յերկարությամբ. ուրեմն՝ աշխարհագրական աստիճանը կամ «մաս»-ը պետք է յեղած լինի ըստ այդ հաշվի 500 Յերատոսթենյան ասպարես (=500×158,57)։ «Հնարավոր է — ասում է նա — վոր նման մի հաշիվ գոյություն է ունեցել հռոմեական-հելլենիստական աշխարհում, վորը մեզ չէ հասել ուրիշ աղբյուրներից»։[1]

Յերկրորդ և յերրորդ վկայությունների մեջ մղոնի հաշիվը (500 ասպարես=71 $^{3}/_{7}$ մղոն) նա յենթադրում է հետամուտ մի ընդմիջարկություն, վորը կարող է քաղված լինել դասական հին աղբյուրներից։[2] Իսկ նրանց մեջ մատնանշված մղոնը, վորը հիշատակված է նաև չորրորդ ու հինգերորդ հատվածներում, նա համարում է հռոմեական մղոն 1480 մետր յերկարությամբ։[3]

Ինձ թվում է, վոր պրոֆ. Մժիկի այս յենթադրությունները դարձյալ վիճելի յեն։ Հին և լավագույն կարելի յե համարել, ինչպես վերև տեսանք, վոչ թե «Ցաղագս ընթացից արեգական» հատվածի, այլ «Աշխարհացոյց» ի համառոտ խմբագրության ընթերցվածները։ Իսկ վերոհիշյալ մղոնը վոչ

---

[1] Հանդ. Ամս., 1933, Թ. 9—10, էջ 572։

[2] Հանդ. Ամս., 1933, Թ. 7—8, էջ 459։

[3] Հանդ. Ամս., 1933, Թ. 9—10, էջ 573։

թե հռոմեական-իտալական մղոնն է, այլ, հավանորեն, հայկական վկայություններում հիշատակված Պարսից կամ հռոմեական-փիլետերյան մղոնը, վորն իր յերկարությամբ համապատասխան է յեղել, ինչպես տեսանք, Երատոսթենյան մղոնին։ Ուրեմն՝ վերոհիշյալ բոլոր վկայություններում, վորոնք ունեն մղոնի հաշիվը, աշխարհագրական աստիճանի կամ «մաս»-ի յերկարությունը հավանական է յենթադրել $500\times{}^{1596}/_{7}$ [կամ ${}^{1575}/_{7}$]=$114\,{}^{1}/_{7}$ [կամ 112,5] կիլոմետր։ Իսկ յերկրի շրջապատը ստացվում է այդ հաշվով $114\,{}^{1}/_{7}$ [կամ 112,5]$\times$360=$41.091\,{}^{3}/_{7}$ [կամ 40.500] կիլոմետր։ Յեթե ի նկատի ունենանք «Աշխարհացույց»-ի համառոտ ու ընդարձակ խմբագրությունների ուշագրավ վկայությունը, վոր «մաս»-ը համարվել է 500 «ասպարիսաց չափ» վոչ թե ճշտիվ, այլ «մերձ շուրջունելությամբ» (Վենետիկի հրատար., եջ 586) կամ «մերձ շուրջունողությամբ» (Սուքրյանի հրատ., եջ 5)՝ դժվար չի լինի, իհարկե, յեզրակացնել, վոր «Աշխարհացույց»-ի վկայությունները համապատասխանում են մոտավորապես Երատոսթենեսի վերոհիշյալ հաշվին, վորը յերկրի շրջապատը յենթադրել եր 159,9$\times$252.000=40.269,9 կիլոմետր [կամ ըստ Հուլչի՝ 157,5$\times$252.000=39.690 կիլոմետր]։

Թե ինչու պրոֆ. Մժիկը վերոհիշյալ մղոնը կարծում է հռոմեական-իտալական՝ այդ դժվար չե բացատրել։

Հետևելով Հուլչի տեսության՝ նա հաստատ համոզված է, վոր յոթնասպարեսյան մղոնը միշտ և ամենուրեք պետք է լինի հռոմեական-իտալական մղոն 1480 մետր յերկարությամբ (տե՛ս Հանդ. Ամս. 1933, Թ. 9—10, եջ 571, նաև Hultsch, Metrologie, եջ 569)։ Սակայն այս պնդումը, վոր համարվում է աներկբայելի, հակասում է պարզապես հայկական վկայություններին։ Մենք տեսանք վերև, վոր «Մղոնաչափք»-ի հաշվում յոթնասպարեսյան է յենթադրված արաբական մղոնը ($273,9\,{}^{3}/_{7}$:1917,6=1:7)։ Յոթնասպարեսյան եր ստացվել նույն հաշվի, ինչպես և Երատոսթենյան ստադիոնի իմ լուծման մեջ, նաև Պարսից մղոնը (230,112 կամ $228\,{}^{2}/_{7}$:1598=1:7)։ Ուշագրավ է նաև այն, վոր հայկական

աղբյուրները յոթնասպարեսյան են համարել թյուրիմացաբար անգամ ողաչափության ասպարեսին համապատասխանող Երատոսթենյան մղոնը։ Այս բոլոր դիտողությունները հաստատում են ըստ իս, վոր Հայաստանում հայտնի յե յեղել, գլխավորապես, յոթնասպարեսյան մղոնը, վորը, հավանորեն, գործածական չափ է յեղել Արևելքում հայկական վկայությունների խմբագրման ժամանակ։

Վոր «մաս»-ի վերոհիշյալ հաշվում ի նկատի յեն առնված «գետնաչափութեան» Պարսից մղոնը և նրան համապատասխանող Պարսից կամ «ասպարիզաց ասպարէզ»-ը՝ այդ կարելի յե ըստ իս կռահել հենց վկայությունների ակնարկներից, վորոնք աշխարհագրական աստիճանը համարում են 500 ասպարես «ուղաչափութեամբ երկրաչափութեան» կամ «երկրաչափությամբ»։ Ինձ թվում է, վոր «ուղաչափութեամբ երկրաչափութեան» կամ «երկրաչափութիամբ» կարելի յե հասկանալ վոչ թե «ուղաչափութեան» իմաստով, ինչպես յենթադրել է պրոֆ. Մժիկը, այլ «գետնաչափութեան» կամ «ցամաքաչափութեան»։ Կարելի յե, ուրեմն, հավանական համարել, վոր «մաս»-ի վերաբերյալ հաշվում մատնանշված են «գետնաչափութիան» ասպարեսը 230,112 կամ $228^{2}/_{7}$ մետր յերկարությամբ և նրան համապատասխանող յոթնասպարեսյան մղոնը 1598 մետր յերկարությամբ։ Վոր այս լուծումն անհավանական չէ՝ այդ յերեվում է վերոհիշյալ հինգերորդ ու վեցերորդ հատվածների վկայություններից, վորոնց մեջ միևնույն այս ասպարեսն անվանված է «նետաձիգ»։ Իսկ «նետաձիգ»-ը, հավանորեն, այն արաբական ghalva-ն է (=230,112 կամ $228^{2}/_{7}$ մետր), վորին համապատասխան է յեղել, ինչպես վերև տեսանք, Պարսից կամ «ասպարիզաց ասպարէզ»-ը։

## 6

Պրոֆ. Մժիկը քննության է առել իր ուսումնասիրության մեջ «Յաղագս ընթացից արեգական և համարոյ չափուց» հատվածի և «Աշխարհացույց»-ի ընդարձակ ու համա-

ռոտ խմբագրությունների ժամանակի խնդիրը և առանձնապես շեշտել է չափական վերոհիշյալ վկայությունների ծագումը հունական հին աղբյուրներից։

Տեսնենք՝ թե ինչպես է նա վորոշել հայոց մատենագրության պատմության կարևոր այդ խնդիրները։

«Յաղագս ընթացից արեգական և համարոյ չափուց» հատվածը նա համարում է, անպայման ու անվերապահորեն, Անանիա Շիրակացու աշխատություն։ Յեվ յենթադրելով, վոր Անանիան ապրել է մոտավորապես 620—705 թվականներում, նրա այդ յերկը նա հորինված է համարում 670-ից մինչև 705 թվականները։[1] Ներքև մենք կըտեսնենք, վոր պրոֆ. Մժիկի այս կարծիքը, վորը բնավ պատճառաբանված ու հիմնավորված չէ մատենագրական կամ փաստական վորևէ ապացույցներով, յելակետ է ծառայել նրան վիճելի ու անհավանական հետևությունների։

«Աշխարհացույց»-ի ժամանակը վորոշելիս՝ պրոֆ. Մժիկն ի նկատի չի ունեցել Պատկանյանի, Հյուբշմանի և Մարկվարտի կարծիքները։ Մարկվարտը, ինչպես հայտնի յե, իր հին Eranschahr աշխատության մեջ (Berlin 1901, եջ 4-6) ուշագրավ մի կարծիք եր հայտնել, վոր «Աշխարհացույց»-ը և Խորենացու պատմությունը պետք է համարվեն միևնույն հեղինակի յերկեր։ Նա յենթադրել եր միաժամանակ, վոր «Աշխարհացույց»-ը գրված պիտի լինի ամենականուխը յոթերորդ դարի վերջերում... կամ, հավանորեն, առաջին Աբբասյանների ժամանակ, այսինքն՝ մոտավորապես 740—790 թվականներին։ Սակայն ավելի նոր իր ուսումնասիրություններում նա, հրաժարվելով իր այդ յեզրակացությունից, համաձայնել եր Պատկանյանի տեսակետին և «Աշխարհացույց»-ը վերագրել Անանիա Շիրակացուն։[2] Հյուբշմանի կարծիքն «Աշխարհացույց»-ի մասին համապատասխանում է

---

[1] Տես Հանդ. Ամս., 1933, Թ. 3—6, եջ 286—2 7։

[2] Տես „Hippolytus Werke", Bd. IV. Nebst einem Beitrag von J. Markwart, Leipzig 1929, եջ 429—431.

մոտավորապես Մարկվարտի այս նոր յենթադրության։

«Աշխարհագրության Հայաստանով զբաղող մասը — ասում է Հյուբշմանը — և ըստ այսմ ամբողջ գրությունը պատմության հեղինակինը չէ։ Յեվ տարակույս չկա, վոր աշխարհագրությունը գրվելու յե պատմությունից ուշ և կարող է գրված լինել ամենականուխը յոթերորդ դարում» (տես «Die altarmenischen Ortsnamen», Strassburg 1904, եջ 374)։

Հիմնվելով այս հին և նոր կարծիքների վրա՝ պրոֆ. Մժիկը «Աշխարհացույց»-ի գրության ժամանակը դնում է վերոհիշյալ յեզրակացությունների համեմատ 670 թվից մինչև 790 թիվը։ Նա հավանական է ընդունում, վոր «Աշխարհացույց»-ի ընդարձակ խմբագրությունը պետք է ավելի հին լինի, քան «Աշխարհացույց»-ի համառոտ խմբագրությունը։[1] Ուստի և հայկական վերոհիշյալ յերկերի ժամանակը նա յենթադրում է հետևյալ հաջորդականությամբ՝ ամենից առաջ հորինված պիտի լինի, նրա կարծիքով, Անանիա Շիրակացու «Յաղագս ընթացից արեգական և համարոյ չափուց» հատվածը, նրանից հետո՝ «Աշխարհացույց»-ի ընդարձակ խմբագրությունը, իսկ ավելի ուշ՝ «Աշխարհացույց»-ի համառոտ խմբագրությունը։[2]

Ընդունելով նաև վերոհիշյալ չափական տեղեկությունների այս հաջորդականությունը՝ նա հին և առանձնապես կարևոր է համարում, բնականաբար, «Յաղագս ընթացից արեգական» հատվածի հաշիվը և ընդունում նույնպես, վոր համապատասխան մյուս հաշիվները ծագել են Անանիա Շիրակացու գրվածքից, վորի մեջ վերջինս գրի յե առել, հավանորեն, Տյուքիկոսի հաղորդած տեղեկությունները։[3]

Պրոֆ. Մժիկի ուսումնասիրության մատենագրական-քննական այս նախադրյալները, ինչպես և նրանցից արված հետևությունները, նույնքան վիճելի յեն ըստ իս, ինչպես և նրա Երատոսթենյան ստադիոնի վերոհիշյալ լուծումը։ Ներ-

[1] Հանդ. Ամս. 1933, Թ. 3—6, եջ 287։

[2] Հանդ. Ամս. 1933, Թ. 7—8, եջ 454։

[3] Հանդ. Ամս. 1933, Թ. 7—8, եջ 438, 451 և Թ. 9—10, եջ 561, 578։

քն մենք ցույց կտանք կետ առ կետ, թե որքան խախուտ են նրա այդ եզրակացությունները։

Նախ և առաջ՝ կասկածելի չէ, անշուշտ, նրա պնդումը, որ իբր թե «Ցաղագս ընթացից արեգական և համարոյ չափուց» հատվածի հեղինակն Անանիա Շիրակացին եւ Պետք է ասել, որ Հար. Ավգերյանի և Ք. Պատկանյանի հրատարակություններում այդ հատվածը վերագրված է, իրոք, Անանիա Շիրակացուն և տպագրված է անգգուշաբար հետևյալ վերնագրի տակ՝ «Ցաղագս ընթացից արեգական եւ համարոյ չափուց ըստ կրկին օրինակաց Շիրակացւոյն» (տե՛ս Ավգերյան, «Բացատրութիւն չափուց եւ կշռոց Նախնեաց», էջ 37 և Ք. Պատկանյան, «Անանիայի Շիրակունւոյ Մնացորդք բանից», էջ 32)։ Այս վերնագրից ստացվում է, իհարկե, այն տպավորությունը, որ այդ հատվածը Շիրակացու աշխատությունն է։ Սակայն թյուրիմացությունը պրոֆ. Մժիկյին ևս կարող էր պարզ լինել, յեթե նա ուշադրության առներ Ավգերյանի հետևյալ ծանոթությունը՝

> «Զկնի առանձինն կարգելոյ ի նախադրունս գործոյս համառօտ ծանօթութեամբք զբանս Եպիփանու. Շիրակացւոյն, և Խորենացւոյն՝ կարեւոր դատեցաք ուրոյն արձանացուցանել և զբանս Դ և Ե օրինակաց Շիրակացւոյն. որ է կարճ ի կարճոյ և ընտիր բովանդակութիւն երեցունց նախակարգեալ գործոցդ։ Եւ թէպէտ ոչ կրէ նա ի ճակատու զանուն Շիրակացւոյն, այլ մեք նմին ընծայեմք և զայս՝ վասն լինելոյ գէթ համառօտութիւն ինչ կշռոց և չափուց նորին. վասն որոյ և ի վերնագիրս անխիղճ եդաք զանուն Շիրակացւոյն՝ զկնի ճակատու երկոցունց օրինակացդ» («Բացատրութիւն», էջ 37, ծան. 1)։

Ավգերյանը, ինչպես տեսնում ենք, վերոհիշյալ գրությունն ընծայել է Շիրակացուն՝ յենթադրելով համառոտություն նրա կշիռների և չափերի։ Սակայն, իրապես, «Ցաղագս ընթացից արեգական և համարոյ չափուց» հատվածն ունի նաև վկայություններ Հին և Նոր Կտակարանների կշիռ-

